# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹ
# 50 ՏԱՐԵԿԱՆ Է














Սիրելի պիոներ: Այսօր դու հպարտությամբ կրում ես կարմիր վզկապը, որը խորհրդանշում է մեր երկրի երեք սերունդների՝ կոմունիստների, կոմերիտականների և պիոներների անխախտ դաշինքը: Քո վզկապը նաև այն քաջարի մարտիկների արյան խորհրդանիշն է, որոնք ընկան լույսի և երջանկության համար մղվող պայքարում: Եվ ահա, քաղաքացիական կռիվների բովում, երբ աշխարհի չար ուժերը բոլոր կողմերից ոտքի էին ելել խեղդելու երիտասարդ սովետական պետությունը, ծնունդ առավ լենինյան կոմերիտմիությունը:

1918 թ. հոկտեմբերի 29-ին Մոսկվայում բացված բանվորագյուղացիական երիտասարդության միությունների առաջին համագումարը որոշում ընդունեց երիտասարդական միությունները միավորել Ռուսաստանի կոմունիստական երիտասարդության միության մեջ: Դա հիսուն տարի առաջ էր: Այդպես ծնվեց կոմերիտմիությունը:

Հիսուն տարի կոմերիտմիությունը քայլել է հարազատ կոմունիստական կուսակցության հետ, նրա ղեկավարությամբ ու նրա կոչով սխրանքների գնացել, հանուն իր ժողովրդի բարօրության, հանուն մեր մեծ հայրենիքի հզորության և այսօրվա ձեր երջանիկ կյանքի:

Կոմերիտմիության պատմությունը հարուստ է պայծառ էջերով: Նա պահպանում է անհամար հերոսական դեպքեր ու իրադարձություններ, պահպանել է խիզախ սրտի և ուժեղ կամքի տեր այն հազարավոր պատանիների ու աղջիկների անունները, որոնք իրենց նվիրվածությամբ, իրենց կյանքով ու հայրենիքի նկատմամբ անսահման սիրով, հյուսել են այդ պատմությունը:

Փառավոր են կոմերիտմիության տրադիցիաները: Դրանք ստեղծվել են աշխատանքում ու մարտում, կոմունիստական կու-

## ՅՈՒՆԸ



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

սակցության ղեկավարությամբ ու աջակցությամբ: Հիսուն տարի այդ փառավոր տրադիցիաները սերնդե-սերունդ են անցնում, և ամեն մի նոր սերունդ իր ավագ եղբայրներից ու քույրերից ժառանգում է կոմերիտական աննկուն ու կրակոտ ոգին:

Հիսուն տարեկան է կոմերիտմիությունը, բայց նա մշտապես երիտասարդ և միշտ պատրաստ է նոր թռիչքների ու սխրանքների: Այսօր էլ կոմերիտականները զբաղված են ստեղծագործ աշխատանքով: Նրանք նորանոր բարիքներ են ստեղծում ամբողջ ժողովրդի և ձեզ համար, իրենց անդուլ աշխատանքով կռում են ձեր վաղվա օրը, կառուցում են ձեր է՛լ ավելի գեղեցիկ, լուսավոր ու երջանիկ ապագան:

Կոմերիտմիությունը ամուր կանգնած է խաղաղության դիրքերում: Կոմերիտականներն արթուն պահակների պես հսկում են մեր երկրի սահմաններն ու քո երջանիկ մանկությունը:

Եվ դու, որ այսօր պատանի լենինյան ես ու կարմիր վզկապ ես կրում, իսկ վաղը դառնալու ես կոմերիտական և կանգնելու ես նրա կուռ շարքերում, գիտե՞ս, թե քեզ որքան համարձակ ու հետաքրքիր գործեր են սպասում: Անսպառ երևակայությունը, համառը և անխոնջ ձգտումը եղել են բոլոր սերունդների կոմերիտականների անբաժանելի ուղեկիցները: Նրանք ստեղծել են քո երջանիկ այսօրը, բացել են տիեզերքի ճանապարհը, և երբ քո ձեռքում կլինի կարմիր անդամատոմսը, դու դառնալու ես

նրանց գործերի շարունակողն ու զարգացնողը:

Ամեն քայլափոխի, մեր կյանքի յուրաքանչյուր ասպարեզում դու հանդիպում ես նրանց՝ մեր երկրի բոլոր սերունդների կոմերիտականներին: Ոմանք սպիտակ մազեր ունեն, մյուսները երիտասարդ են, և դու պետք է իմանաս, որ նրանք բոլորն էլ բարձր են պահել կոմերիտմիության դրոշը և գործով ապացուցել են, որ արժանի են կոմերիտական անդամատոմսը կրելուն:

Քաղաքացիական պատերազմների ռազմաճակատներում, սոցիալիստական շինարարության մատույցներում, Հայրենական պատերազմի բովում են թրծվել կոմերիտմիության հիանալի հատկությունները, անսահման սերը դեպի հայրենիքը, կուսակցության առաջին իսկ կոչով մարտի գնալու պատրաստակամությունը, անխորտակելի տոկունությունը թե՛ կռվում, թե՛ աշխատանքում, բոլոր դժվարությունները հաղթահարելու կարողությունը, ավնվությունը, նվիրվածությունը և պայծառ հավատը կոմունիզմի հաղթանակի նկատմամբ:

Այդպիսին են քո ավագ եղբայրներն ու քույրերը: Եվ դու պետք է այնպես անես, որ դառնաս նրանց արժանի փոխարինողը, որպեսզի վաղը ձեր սերնդի կոմերիտականները շարունակեն կյանքով, սիրով ու հավատով գրված այդ հիսունամյա փառավոր պատմությունը:

# ՏԱՐԻՆԵՐ, ԴԵՊՔԵՐ, ՍԽՐԱՆՔՆԵՐ




## ԲՈԼՈՐԸ ՄԵԿՆԵԼ ԵՆ ՌԱԶՄԱՃԱԿԱՏ

*Հոկտեմբերյան հեղափոխությունը տապալեց թագավորի և կապիտալիստների իշխանությունը և ազատություն բերեց ժողովրդին: Բայց ժողովրդի թշնամիները չէին հանգստանում: Եվ ահա նրանք, դաշնակցած օտարերկրյա իմպերիալիստների հետ, բոլոր կողմերից հարձակվեցին մեր երկրի վրա, որպեսզի խեղդեն բանվորների ու գյուղացիների աշխարհում առաջին պետությունը: Սակայն ժողովուրդը չէր կարող հրաժարվել իր նվաճումներից և նա համախմբված ոտքի կանգնեց թշնամու դեմ: Իրենց հայրերի ու ավագ եղբայրների՝ կոմունիստների օրինակով զենք վերցրեցին նաև կոմերիտականները:*

*Ահա հենց այդ տարիներին էր, որ շրջկոմների դռներին կարելի էր կարդալ լեգենդար դարձած հայտարարությունը. «Շրջկոմը փակ է: Բոլորը մեկնել են ռազմաճակատ»:*



*Թշնամու դեմ մղած ծանր պայքարում ավելի ու ավելի էին ամրապնդվում ու ստվարանում կոմերիտմիության շարքերը: 1918–1920 թ.թ. ընթացքում կոմերիտականների թիվը ավելացավ քանի անգամ: Քաղաքացիական պատերազմների տարիներին կոմերիտմիության շարքերն անցնել, նշանակում էր՝ գնալ ռազմաճակատ: Պատանիները կոմերիտական տոմսի հետ միասին հրացան և երկու հարյուր փամփուշտ էին ստանում: Նրանք մեկնում էին ռազմաճակատների ամենապատասխանատու և վտանգավոր հատվածները, որտեղ վճռվում էր սովետական հայրենիքի բախտը:*

*Կոմերիտականները կռվում էին Դոնի ու Զանգեզուրի փառապսակված դիվիզիաներում, Բուդյոննու հեծելազորի շարքերում, ամենուրեք նրանք աչքի էին ընկնում իրենց քաջությամբ, անվեհերությամբ և շատ ու շատ*



*սխրանքներ կատարեցին: Կարմիր բանակի շարքերում կռվում էին 200 հազար կոմերիտականներ, և նրանցից ավելի քան հինգ հազարը արժանացան այն ժամանակվա ամենաբարձր պարգևին՝ Կարմիր դրոշի շքանշանի:*

*1919 թվականին ստեղծվեց նաև Հայաստանի կոմերիտմիությունը: Հայ կոմերիտա-*



կանները անօրինակ խիզախության ու արիության բազմաթիվ օրինակներ տվեցին։ Կռվելով հայ ժողովրդի թշնամիների դեմ՝ նրանք միայն ուզում էին, որ իրենց ժողովուրդը ազատվի կեղեքումից ու տանջանքներից և ձեռք բերի ազատություն ու երջանկություն։

Բայց կոմերիտականները միայն ռազմաճակատներում չէ, որ աչքի ընկան։ Հարկավոր էր օգնել կռվողներին և ամբողջ երկրով մեկ շաբաթօրյակների ալիք անցավ։ Կոմերիտականները վերականգնում էին քանդված երկաթուղագծերը, բեռնաթափում էին վագոնները, վերանորոգում էին հիվանդանոցները, խնամում էին վիրավորներին, օգնում էին կարմիրբանակայինների ընտանիքներին։

Եվ թշնամին պարտվեց։ Այժմ ժողովուրդը կարող էր անցնել խաղաղ աշխատանքի ու տնօրինել իր բախտը։ Եվ քաղաքացիական պատերազմների ռազմաճակատներում ցուցաբերած արիության ու մարտական սխրանքների համար սովետական կառավարությունը 1928 թ. լենինյան կոմերիտմիությանը պարգևատրեց Կարմիր դրոշի շքանշանով։ Դա կոմերիտմիության առաջին պարգևն էր։

## ԿԱՌՈՒՑՈՒՄ ԵՆ ԵՐԿԻՐԸ




1931 թ. կոմերիտմիությունը պարգևատրվեց Կարմիր դրոշի երկրորդ շքանշանով։ Դա կառավարության և կուսակցության բարձր գնահատականն էր սոցիալիստական շինարարության ասպարեզում կոմերիտմիության ցուցաբերած նախաձեռնության և հարվածային աշխատանքի համար.

Իշխանությունը անցել էր ժողովրդին, բայց կուլակներն ու դասակարգային մյուս թշնամիների մնացուկները ամեն կերպ աշխատում էին խանգարել, թույլ չտալ, որ մեր երկիրը զարգանա, որ ժողովուրդը լավ ապրի։ Նրանք դեռևս հույս ունեին, որ կվերականգնվեն հին կարգերը, երբ իրենք հրամայում էին, իսկ բանվորներն ու գյուղացիները՝ մեջքը ծռած աշխատում։ Բայց նրանք սխալվում էին։ Ժողովուրդը պայքարում էր նրանց դեմ ու կառուցում։ Եվ նորից կոմերիտականները առաջին շարքերում էին։ Իրենց ամբողջ ուժն ու եռանդը նրանք նվիրել էին մեր երկրի վերածնունդին։ Նրանք քիչ էին քնում, քիչ էին հանգստանում, աշխատում էին արտաժամյա, կազմակերպում էին շաբաթօրյակներ։ Նրանք հասկանում էին, որ առանց գիտելիքների, առանց գրագիտության, դժվար է



շատ բան անել, և աշխատանքից բացի, նաև սովորում էին ու միաժամանակ սովորեցնում ուրիշներին։

Կոմերիտականները շատ էին զբաղված, բայց նրանք չէին մոռանում նաև իրենց փոքրիկ եղբայրներին ու քույրիկներին։ Եվ ահա 1922 թ. կոմերիտմիության 5-րդ համագումարը որոշում ընդունեց Համամիութենական պիոներական կազմակերպության ստեղծման մասին։ Ստեղծվեցին առաջին պիոներական ջոկատները, կոմերիտականների շարքերից դուրս եկան առաջին ջոկատավարները։ Մեզ մոտ՝ Հայաստանում, պիոներական առաջին ջոկատի ջոկատավարը եղավ Սարգիս Մնացականյանը։ Սկիզբ դրվեց պիոներական բազմաբովանդակ ու հետաքրքիր առօրյային։

1924 թ. վախճանվեց Վ. Ի. Լենինը։ Այդ համաժողովրդական վիշտը ավելի համախմբեց կոմերիտականներին։ Կոմերիտմիության 6-րդ համագումարը որոշեց իրենց կազմակերպությանն այսուհետև կոչել մեծ առաջնորդի անունով։

Ոչ մի նոր գործ չէր սկսվում ու ավարտվում առանց կոմերիտականների մասնակցության։ Կոմերիտականների ձեռքերով կառուցվեց Կոմսոմոլսկ քաղաքը Ամուրի վրա, նրանց օգնությամբ ու մասնակցությամբ կառուցվեցին Մագնիտոգորսկը, Դնեպրոգէսը, շատ գործարաններ ու արդյունաբերական նոր կենտրոններ, կանաչեցին ու փթթեցին կոլտնտեսային դաշտերը։

Ընդամենը երկու տասնամյակում հարստահարողների լծի տակ հեծող ժողովուրդը դուրս եկավ հետամնացության գրկից և սկսեց ապրել ազատ ու երջանիկ կյանքով։

## ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԱՄԱՐ




Բայց ոմանց հանգիստ չէր տալիս այն միտքը, որ մեր երկրում այլևս չկան տերեր և ծառաներ, որ մարդիկ ապրում են խաղաղ ու հաշտ և երջանիկ են: Եվ ահա 1941 թ. հունիսի 22-ին ֆաշիստական Գերմանիան ուխտադրժորեն հարձակվեց մեր երկրի վրա, ընդհատելով միլիոնավոր մարդկանց ստեղծագործ աշխատանքը: Այդ ծանր օրերին ողջ ժողովրդի հետ հայրենիքի պաշտպանների շարքերում կանգնեցին նաև կոմերիտականները:

Հայրենական պատերազմի առաջին իսկ օրերից հարյուր հազարավոր պատանիներ ու աղջիկներ կամավոր մեկնեցին ռազմաճակատ, աշխատանքային հերթափոխի կանգնեցին գործարաններում ու ֆաբրիկաներում, հայրերի ու ավագ եղբայրների փոխարեն իջան հանքահորերը, նստեցին տրակտորների ու կոմբայնների ղեկի մոտ:

Թշնամու գրաված շրջաններում կոմերիտականները ընդհատակյա խմբեր էին կազմում ու պայքարում թշնամու դեմ: Նրանք ոչ մի բանից չէին վախենում՝ ո՛չ բռնվելուց, ո՛չ մահից, և ամեն ինչ անում էին, որպեսզի ջլատեն թշնամու ուժերը և մոտեցնեն հաղթանակը: Կրասնոդոնի երիտասարդ գվարդիականները, Պրոլոմ գյուղի պատանիներն ու աղջիկները և շատ ու շատ նրանց նմանները



ընկան այդ պայքարում, ափսոսալով ոչ թե իրենց կյանքը, այլ որ չկարողացան ավելին անել հայրենիքի համար:

Ռազմաճակատում կոմերիտականները արիաբար կռվում էին թշնամու տանկերի դեմ, գրոհում էին ամրությունների վրա, կրծքով փակում էին հրակնատները: Ալեքսանդր Մատրոսովի, Հունան Ավետիսյանի ու մյուսների անօրինակ սխրանքները սարսափեցնում ու ընկճում էին թշնամուն: Բազմաթիվ կոմերիտականներ էին կռվում Մոսկվայի մատույցներում ու Ստալինգրադում, մասնակցում էին Լենինգրադի, Օդեսայի ու Սևաստոպոլի պաշտպանությանը:

Նենգ էր ու խորամանկ թշնամին, բայց աննկուն ու արի էին մեր բանակն ու ժողովուրդը: Եվ թշնամին չդիմացավ, տեղի տվեց սովետական մարդկանց տոկունության ու անձնազոհության առաջ և դուրս շպրտվեց մեր երկրից: Եվ կռվելով Կարմիր բանակի շարքերում՝ կոմերիտականները բոլորի հետ միասին հասան Բեռլին և այնտեղ ծածանեցին հաղթանակի դրոշը:

Այդ ծանր փորձության ժամին կոմերիտականները ցուցաբերեցին իրենց լավագույն հատկությունները, իրենց արիությամբ, հերոսական գործերով նպաստեցին հաղթանակին, և ահա թե ինչու, պատերազմի ավարտից հետո լենինյան քաջարի կոմերիտմիությունը պարգևատրվեց Լենինի շքանշանով:

## ՆՈՐ ՆՎԱՃՈՒՄՆԵՐ










Ժողովուրդը նորից անցավ խաղաղ աշխատանքի: Հարկավոր էր վերականգնել պատերազմի հետևանքով ավերված քաղաքներն ու գյուղերը, գործարաններն ու ֆաբրիկաները: Կոմերիտականները մի մարդու նման ձեռնամուխ եղան երկրի տնտեսության վերականգնմանը:

Կարճ ժամանակում նրանց հերոսական աշխատանքով նորից վեր խոյացան շատ քաղաքներ, կանաչեցին կոլտնտեսային դաշտերը:

Միլիոնավոր կոմերիտականներ մեկնեցին Հեռավոր Արևելք՝ կառուցելու նոր քաղաքներ, գործարաններ, հիդրոէլեկտրակայաններ: Կոմերիտականների ձեռքերով կառուցվեցին Բրատսկի և Կրասնոյարսկի հիդրոէլեկտրակայանները, Վոլգա-Դոնի ջրանցքը:

Կուսակցության կոչով շատ



կոմերիտականներ մեկնեցին նորակառույցները, գնացին յուրացնելու միլիոնավոր հեկտար խամ ու խոպան հողերը: Բազմաթիվ կոմերիտականներ արժանացան սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման: Եվ զարմանալի չէ, որ հետպատերազմյան տարիներին կոմերիտմիությունը երկու անգամ ևս արժանացավ կառավարական բարձր պարգևի՝ Լենինի շքանշանի:

Այսօր էլ, երբ մեր երկիրը դուրս է եկել տիեզերք, երբ մեր արբանյակներն ու տիեզերանավերը ակոսում են տիեզերքը, հասնում են մինչև Լուսին ու Վեներա, և հեռու չէ այն օրը, երբ մարդն ինքն էլ ոտք կդնի մեր համակարգության մոլորակների վրա՝ մեր բոլոր նվաճումներում իր ավանդն ունի նաև կոմերիտմիությունը: Ահա թե ինչու հավատում ես, որ կոմերիտմիությունը, որի կրծքին շողում են հինգ բարձր պարգևները, այսուհետև ևս քայլելու է աշխարհի առաջավոր մարդկության շարքերում և լինելու է նոր մեծ գործերի նախաձեռնողն ու իրագործողը:





# Մեր կոմբատը



ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Չգիտեմ ինչպես են ձեր հայրիկները, բայց իմ հայրիկը... Իմ հայրիկը քիմիկոս է, գունատ դեմքով, քիմիական նյութերից այրված, սառույցի պես սահն ու երկար մատներով և միշտ մտազբաղ՝ ասես ինչ-որ բան կորցրած լինի, որ երբեք չի գտնելու:

Սակայն կա մեկը, որին հանդիպելիս նա շփոթվում է սիրելի ուսուցչին հանդիպող աշակերտի նման. Նրա հոգնած դեմքը պայծառանում է, թվում է, թե հիմա հուզմունքից շողացող աչքերը կլցվեն ուրախության արցունքներով, թվում է, որ նա, ահա, գտել է այն, ինչ փնտրում էր երկար ժամանակ:

Հենց նա է «մեր կոմբատը»:

Կոմբատ, կոմբատ, ինչ լավն ես եղել դու, իմ հայրիկի մանկության կոմբատ:

Ես այժմ գիտեմ քո մասին, հայրիկս հենց երեկ պատմեց քո մասին, և ես քեզ շատ սիրեցի, ծերացած կոմբատ:

Մինչդեռ ինձ թվում էր, որ քո նմանները արտակարգ արտաքին են ունենում, որ քո նմանները միայն գրքերում են լինում...

* * *

Հայրիկս ասում էր, թե՝ կարծես երեկ էր...

Հենց այդպես էլ սկսեց հայրիկս.

— Թեև քառասունմեկ տարի է անցել այդ օրերից, բայց կարծես երեկ էր:

Այո, 1927 թվականի ամառն էր: Ես՝ մայրական գուրգուրանք չտեսած որբ մի տղա, ոչ միայն առաջին անգամ պիոներական ճամբար ընկա, այլև՝ գնացք նստեցի: Դե, այդ ժամանակ ամեն ինչ նոր էր, ամեն ինչ դժվար: Մեզ, հատկապես որբերիս, սպիտակ շապիկներ տվեցին և էլի սպիտակ քաթանե կոշիկներ և, նույնիսկ, լաքե ճաքճքած գոտիներ: Ինձ պղնձյա խոշոր ճարմանդով զինվորական մի գոտի էր բաժին ընկել, որ համարյա երկու տակ էր գալիս մեջքովս. բայց ի՜նչ հպարտ ու երջանիկ էի զգում ինձ... Դե, ընդամենը տասներեք տարեկան էի և, համարյա թե առաջին անգամ էի այդպես սրտանց ուրախանում...

Մենք Երևանից դուրս եկանք վաղ առավոտյան և գնում էինք ապրանքատար վագոններով: Համարյա բոլոր կիսակայարաններում մենք ջրի էինք վազում, մինչև որ գնացքը մտավ զով ու հեքիաթային Լոռու ձորը: Երբեք չեմ մոռանա. մի ոլորանից անցնելու ժամանակ, քարափի վրայից որսորդական հրացանը կրակելով մեզ



ռղջունեց մի փափախավոր երիտասարդ: Այնքան միամիտն էինք, այնքան ռոմանտիկ, որ, հատկապես ես, հավատացի, երբ ասացին, որ նա Անուշի եղբայր Մոսին է, որ Սարոյին սպանելուց հետո, դեռ մինչև հիմա «ղաչաղ է ընկել Լոռվա սարերում»...

Կեսգիշեր էր, երբ գնացքը կանգ առավ. քնաթաթախ իջանք ու կիսակայարանից թեքվելով սկսեցինք բարձրանալ դեպի անտառապատ բլուրները, ու մինչև լույս քայլեցինք:

Մեր երգի տակ էլ բացվեց արշալույսը... Հասել էինք մեր ճամբարի վայրը. հեքիաթային մի բացատ էր դա, անտառի մեջ մխրճված, կողքից արցունքի պես զուլալ մի վտակ կարկաչելով իջնում էր դեպի թափանցիկ, գունաշաղ ու թրթռուն լճի նմանվող խոր հովիտը... Էլ ինչ քնել. սկսեցինք խփել մեր վրանները: Լավ հիշում եմ՝ ինը վրան ունեինք, ամեն մեկում վեցյոթ հոգի. իններորդը ճամբարի շտաբն էր, որի վրա ծածանվում էր եռանկյունի փոքրիկ դրոշակը: Այդտեղ էր քնում մեր Կոմբատը: Բայց ի՛նչ եմ ասում. ինձ թըվում է, որ նա ոչ մի գիշեր էլ չքնեց. գոնե ես իմ պահակությունների ժամանակ նրա քնելը չտեսա...

* * *

Մենք առաջին իսկ օրվանից սիրեցինք նրան, առաջին իսկ օրվանից նա մեզ համար ինչ-որ հերոսական դեմք դարձավ: Եվ, իսկապես, և՛ հոգով, և՛ արտաքինով գեղեցիկ երիտասարդ էր մեր Կոմբատը: Եվ ի՜նչ ուժ ուներ. հիմա տեսնողը կասի՞, որ նա ամեն առավոտ, լույսը չբացված, իջնում էր հովիտ և մոտ երեք կիլոմետր հեռվում գտնվող գյուղից շալակով բերում մեզ համար թխված թարմ լավաշն ու մածունը: Եվ ինչե՜ր չգիտեր քաղաքացիական կռիվներից, ո՞ւմ մասին ասես չգիտեր: Իմ իմացած բոլոր հեղափոխական և կոմերիտական երգերը նրա սովորեցրածն են: Նա ասես ամբողջովին այն գեղեցիկ, խորհրդավոր աշխարհից էր գալիս՝ Գայի, Չապաևի, Լիպարիտ Մըխչյանի աշխարհից, և այդպես էլ չգիտեմ մեզանից ո՞վ առաջին անգամ նրան Կոմբատ անվանեց: Գուցե այդ ռոմանտիկ լեռնաշխարհում մենք մեզ կարմիր պարտիզաններ էինք երևակայում՝ փոքրիկ գայլակններ-չապաևականներ, և կարիք ունեինք մեր Կոմբատին...

* * *

— Հիմա ես քեզ կպատմեմ անմոռանալին...— շարունակեց հայրիկս:— Այո, դա մոռացվելու բան չէ, որովհետև թվում է, որ այդպիսի դեպքերը միայն գըրքերում են պատահում...

Մի օր, անտառի մեջ խորացած մեր ընկերներից մի քանիսը ետ վերադարձան վազելով, տագնապահար: Մեկը մյուսի խոսքը կտրելով՝ նրանք պատմեցին, որ սունկ հավաքելու ժամանակ հանկարծ խշխշոց ու ոտքերի տակ ջարդոտվող չոր ճյուղերի ձայներ են լսել: Կոմբատը, որ այդ պահին վրան-շտաբում մեր պատի թերթով էր զբաղված, սկզբում նրանց լսեց մեղմ ժպիտով ու ասաց, որ պիոներն այդքան վախկոտ չպիտի լինի, որ դա նապաստակ է եղել կամ էլ նրանց թվացել է: Իսկ երբ տղաները պնդեցին, որ այդ ձայները նապաստակի բան չէին, որ ավելի շուտ ծանրամարմին գազանի հանած աղմուկի էին նման՝ նա վայր դրեց ձեռքի վրձինը և ոտքի ելավ: «Ես հիմա կստուգեմ, վախկոտնե՛ր»,— ժպտալով ասաց նա և տղաների ցույց տված ուղղությամբ խորացավ անտառի մեջ: Մենք հետաքրքրությունից վառված, տագնապով, ըսպասում էինք նրան անտառի եզրին ու հազար ու մի ենթադրություններ անում, երբ նա վերադարձավ բավականին ուշացումով և բավականին մտահոգ: Ոչ, իսկապես որ տղաները չէին սխալվել. տղաների ասած վայրում նա մարդկային հետքեր էր գտել. անծանոթը փախչելիս նույնիսկ սայթաքել էր և զառիվեր անտառի միջից անցնող վտակի ավազախառն, խոնավ ափի վըրա թողել ոչ միայն իր ոտնահետքերը, այլև հրացանի կոթունի, որի վրա հենվելով, ինչպես երևում էր, նա բարձրացել էր ոտքի:

— Բանդիտ է,— բոլորիս էլ փշաքաղելով, եզրակացրեց նա:

Բացատրությունը ավելորդ էր. մենք դեռ Երևանում գիտեինք, որ նորաստեղծ կարգերի թշնամիները ոչ միայն իրենք, այլև շատ մոլորյալների իրենց հետ դեպի սարերն ու անտառներն էին քաշում:



— Ինչպես երևում է, մենակ է: Բարձրացել է անտառ յուրայիններին գտնելու և չի գտել: Եթե նա խմբի հետ լիներ և ինչ-որ հանձնարարությամբ մոտակա գյուղերն իջնելու մտադրություն ունենար՝ կասկած չըհարուցելու համար զենքով չէր իջնի: Քաղցած է այդ

հիմար բանդիտը,— ավելացրեց նա խոր համոզվածությամբ,— և ուտելիք ձեռք գցելու համար փորձել է մոտենալ մեր վրաններին: Ի՞նչ կասեք, տղաներ, գուցե մենք օգնենք այդ բանդիտին:

— Օգնե՞նք...— զարմացանք մենք:

Կոմբատը ժպտաց.

— Այսինքն՝ խելքի բերենք. եթե նա երդվյալ թշնամի չէ և մոլորյալ է՝ ուրեմն չի հասկանում, թե ում դեմ է զենք վերցրել: Եվ հավատացեք, տղաներ, անտառ փախչողների մեծ մասը այդպիսիներն են. եթե շրջկենտրոն հայտնենք ու գան անտառը սանրելու՝ նա անկասկած ինքնապաշտպանության կդիմի և գուցե սպանվի: Ինչո՞ւ իզուր տեղը գնա ու կորչի, երբ կարող է առանց աղմուկի հանձնվել և մարդավարի ապրել:

— Իսկ եթե կատաղի թշնամի՞ է...— բոլորիս էլ փշաքաղելով կասկած հայտնեց մեկը:

— Բոլոր դեպքերում էլ ոչ մի անտառ նրան չի փրկի,— տխուր ժպտաց նա:

«Ի՞նչ է մտադիր անել մեր Կոմբատը,— մտածում էինք մենք. մի՞թե մեն-մենակ, այդպես անզեն, պիտի գնա նրան «խելքի բերելու»...

— Գնա՛նք,— հանկարծ դեպի վրան-շտաբը դիմելով ասաց նա,— գնա՛նք, տղաներ, ես կարծես թե մտածեցի, թե ինչ պիտի անել:

Մենք հևիհև հետևեցինք նրան. քիչ հետո նա թղթի մի կտորի վրա, ածխամատիտով, հաստ ու ընթեռնելի գրել էր հետևյալը.



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

«Իջի՛ր, մի՛ վախենա. քեզ մոլորեցրել են. մենք թշնամիներ չենք»:

Ապա, նա մեր մշեցի խոհարարից խնդրեց մի բաժին հաց, կանաչ լոբի և տապակած կարտոֆիլ՝ այդ օրվա մեր ճաշը, և բոլորիս զարմացական հայացքների տակ փաթաթեց թաշկինակի մեջ:

— Ճա՞շ էլ եք տալու...— զարմացանք մենք:

— Ես վստահ եմ, որ նա քաղցած է: Թող ուտի, որ լավ մտածել կարողանա,— թերթիկը կապոցի ճեղքում դնելով, ժպտաց նա:

— Ինքնե՞րդ եք տալու...

— Ոչ, կախ կտամ նրա եկած ճամփին գտնվող ծառի մի ճյուղից: Եթե չեմ սխալվում՝ նա անպայման նորից կփորձի դուրս գալ անտառից: Չէ՞ որ ելքի միակ արահետը այս կողմից է:

Գնաց ու իսկույն վերադարձավ: Այնուհետև մեր խոսակցության նյութը բանդիտն էր. մենք նրան պատկերացնում էինք ամենասարսափելի ձևերով, իսկ մեր հարազատ անտառը ավելի սարսափազդու դարձավ՝ հատկապես իրիկնային ստվերները իջնելիս:

Ինձ թվում է այդ գիշեր մեծ մասի քունը չտարավ: Ես որ աչքս չփակեցի: Իսկ առավոտյան պահակների վրա գույն չկար, թեև Կոմբատը մինչև լույս շրջել էր ճամբարի շուրջը:

Արտակարգ անհամբերությամբ անցկացրինք ցերեկը: Երեկոյան Կոմբատը գնաց անտառ: Մենք շնչակտուր սպասում էինք նրա վերադարձին: Եկավ ուրախությունից շողալով:

— Տղանե՛ր,— բացականչեց նա դեռ բացատ չեկած,— տարել է կապոցը: Տեսա՞ք, որ ասացի քաղցած կլինի:

— Իսկ ինչո՞ւ չհանձնվեց...

— Երևի դեռ չի հավատում մեզ... Ոչինչ, մենք վաղը նույնը կկրկնենք:

Ինչ խոսք, որ երկրորդ օրն էլ մենք իզուր սպասեցինք: Նա դուրս չեկավ անտառից և երրորդ օրը, թեև ամենայն ճշտապահությամբ գալիս և տանում էր կապոցն ու թերթիկը: Մենք պարզապես կտրել էինք մեր հույսը, բայց Կոմբատը, որ թեև անհանգիստ էր, ընդհակառակը, կրկնում էր, որ ինքը արդեն չի կասկածում, որ նա իսկապես մոլորյալ է, անհույս և քաղցած մի բանդիտ: Այսպես, ճաշից հետո, ժամը երեքը թե չորսը հազիվ լիներ, մենք նստել էինք բացատից դեպի անտառը տանող դարավանդի տակ, որի վրա կռացել էին դարավոր կաղնիները, և արդեն համոզված, որ բանդիտը անգրագետ է կամ, ով գիտե, գուցե մալական կամ ադրբեջանցի՝ հետևաբար ոչինչ էլ չի հասկանում թերթիկից, երբ հանկարծ, ասես հենց մեր կողքին ինչ-որ խուլ թրմփոց լսեցինք: Առաջինը ոտքի թռավ Կոմբատը, և նրա աչքերը շողացին ուրախությունից: Մի քանի քայլ մեզանից հեռու, դարավանդի տակ, եղինջների և մասրենիների թփերի արանքից, սև օձի պես շողում էր, վերևից սահեցնելով վայր գցված

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

## Լենինյան կոմերիտմիությանը



*Դու՝ վառվող հավատ ու կամք անձնկուն,*
*Դու՝ երկնքի տակ վեհության մի լեռ...*
*Քո տեղն այնտեղ է միշտ եղել կյանքում,*
*Որտեղ ապրելը դժվար է եղել:*
*Անցել ես անթիվ ծովերով հրի,*
*Քո սխրանքները բոլորը գիտեն՝*
*Դու ճանապարհն ես հարթել անհասի,*
*Եվ անկարելին չոքել է քո դեմ:*
*Անահ ես նայել օրերի ամպին,*
*Մռայլ ծմռանը եղել ես հրով,*
*Ինչ կորցրել է աշխարհն իր ճամփին,*
*Դու այն գտել ես գալիքիդ նորով:*
*Բոլոր մարտերում մեր ա՛նհավասար,*
*Թե երկնքի մեջ, թե ծովի վրա,*
*Դու պաշտպանել ես երկիրը քո մայր*
*Եվ դարձել բուրող ծաղիկը նրա:*
*Գարնան ու սիրո վարարումն ես հորդ,*
*Ավյունով լցված գալիքն ես բարի...*
*Նստել ես հիմա կյանքի ղեկի մոտ*
*Եվ անիվներն ես շարժում աշխարհի:*
*Քեզ գուրգուրում են օրերը վառման*
*Իրենց արևով, մաքրությամբ անգին...*
*Երանի ե՛ս էլ պատանի դառնամ*
*Եվ միանամ քո հսկա բանակին:*

ված հրացանի փողը: Կոմբատը հազիվ էր բարձրացրել հրացանը, երբ դրան հետևեց սև կաշվից կարված լիքը փամփշտակալը ու, ձեռքերը բարձրացրած, դարավանդի վրա երևաց դողացող ծնկներով վայր իջնող մի երիտասարդ գյուղացի: Ես ուղղակի չէի հավատում աչքերիս. մինչև այդ ինձ թվում էր, որ բանդիտը սարսափելի արտաքինով մեկը պիտի լինի: Իսկ նա, իսկապես, գեղեցիկ էր, սև, երկարած մորուքով և խղճալիորեն գունատ ու տառապած դեմքով: Տրեխների մաշվածությունի՞ց, թե՞ իր լայն բացած, դեռևս անվստահությամբ լի աչքերը մեզ վրա հառելուց, նա իջնում էր հարբածի նման օրորվելով ու սահելով դարավանդի վրա:

* * *

Հայրիկս դանդաղորեն մոտեցավ լուսամուտին և, ասես այդ պատկերը աչքերի մեջ, մի պահ լուռ, մըտքերով տարված մեքենաների աղմուկով լցված պողոտային էր նայում:

— Իսկ ո՞վ էր այդ երիտասարդը...— հորս պատմածի ազդեցության տակ, խզված ձայնով հարցրի ես:

— Իսկապես մոլորյալ մեկը, որ տասնութ օր թափառել էր անտառում: Կոմբատը չէր սխալվել: Կուլակները նրան վախեցրել էին, թե կարող են իրեն բռնել: Խեղճ տղան, իսկի չէր էլ մտածել, որ հանցանք չի գործել, ինչո՞ւ պիտի բռնեին: Հրացանն ու փամփըշտակալը հետևյալ օրը տարավ շրջկենտրոն:

— Իսկ հե՞տը:

— Բաց թողեցին, որ իրենց գյուղը գնա՝ լռեցի էր: Տարիներ հետո Կոմբատը նրան պատահել էր Դսեղում: Պատմեց, որ հիանալի կոլտնտեսական էր դարձել: Բայց ես մի բան մոռացա... Երբ բաց թողնելուց

# ԲԱԼԼԱԴ ՀԱՅ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆԻ ԵՎ ՌՈՒՍ ՊԱՊԻ ՄԱՍԻՆ

*Թշնամին էր տվել նահանջ,*
*Թողել արկ,ական...*
*Մնացել էր դաշտում՝ մի քաջ*
*Կոմերիտական:*
*Անտառն էին մտել ծյունոտ՝*
*Տղերքը բոլոր,*
*Բայց նա վառված մի գյուղի մոտ*
*Կանգնել էր մոլոր:*
*Լուռ պառկել էր գետնի վրա*
*Մի խեղճ ծերունի,*
*Վիրավոր էր, դեմքը նրա*
*Նման էր ձյունի:*
*Տխրեց տղան, բայց ոչ մի բառ*
*Ջասաց ընկածին....*
*Նրան ինչպե՞ս տաներ անտառ*
*Վաղ լուսաբացին:*
*Եվ մտածեց նա միալար,*
*Շփեց դեմքը թուխ,*
*Կտրեց կեչի ծառից դալար*
*Գոգավոր մի ճյուղ:*
*Ամուր կապեց պապին վրան*
*Ու ժպտաց բարի*
*Եվ քաշելով տարավ նրան*
*Խորքերն անտառի:*
*Իսկ անտառում, այնտեղ մերոնք*
*Ջմռանն ամպամած*
*Դեղեր տվին պապին խելոք,*
*Բուժեցին կամաց...*
*Ուրախացավ տղան զինվոր,*
*Կարոտ կար հոգում,*
*Հիշելով հորն իր հեռավոր,*
*Լաց եղավ թաքուն:*
*Հետո պապը մեր անխռով,*
*Վրեժի ծարավ*
*Մերոնց գաղտնի ճանապարհով*
*Անտառից տարավ:*
*Կածաններով տարավ առաջ*
*Անցավ ծերպ ու ձոր,*
*Որ միանա ջոկատը քաջ*
*Գնդերին հզոր...*
*Տարիներ են անցել ահա*
*Բայց զինվորը հին*
*Սիրով, ցավով այն ծմեռվա*
*Հիշում է պապին:*
*Կարծես նրան տեսնում է նա*
*Իր աչքերի դեմ...*
*Թեև պապը վաղու՜ց չկա*
*Աշխարհում արդեն:*

Նկ. ՎԱՉԵ ԽԵՎԱՆՅԱՆԻ

առաջ կերակրում էինք բանդիտին, պարզվեց, որ Կոմբատը ավելի քաղցած էր. նա իր երեք օրվա ճաշաբաժինն էր տարել անտառ... Դե, ծանր ժամանակներ էին, ամեն ինչ հաշված էր, ամեն մի գրամ հացը... Իհարկե, եթե իմանայինք, մենք մեր Կոմբատին այդպես չէինք թողնի: Եվ խոհարարն էլ չգիտեր այդ մասին:

Եվ, էլի մի պահ լռելուց հետո, հայրիկս շարունակեց.

— Ես քեզ ինչո՞ւ պատմեցի այս բոլորը: Պատմեցի, որ իմանաս, թե ինչպիսին պիտի լինի կոմերիտականը, թե ինչպիսին էին մեր առաջին կոմերիտականները... Նա իմ առաջին ուսուցիչն է եղել, հոգեկիցը: Նա իր ազնվությամբ ու մարդասիրությամբ, իր հաշված հացի պատառը տալով, ցույց տվեց, թե ինչքան մարդկային են մեր կարգերը: Կոմբատ, Կոմբատ... Իսկ Հայրենական պատերազմի ժամանակ նա իսկապես կոմբատ դարձավ: Չորս վերք է ստացել, իսկ ձախ ձեռքը չի աշխատում...

— Իսկ ի՞նչ էր անում մինչ այդ:

— Նա իր ամբողջ կյանքը նվիրեց պիոներներին և կոմերիտմիությանը: Քանի՜ սերունդ է դաստիարակել... Եվ այժմ թոշակառու է մեր Կոմբատը... Ծերացել է... Իսկ այն ժամանակ... Ի՜նչ երիտասարդ էր, ի՜նչ կոմերիտական...

* * *

...Կոմբա՛տ, Կոմբա՛տ, ի՜նչ լավն ես եղել դու, իմ հայրիկի մանկության Կոմբատ:

Մինչդեռ ինձ թվում էր, որ ՝քո նմանները արտակարգ արտաքին են ունենում, որ նրանք երբեք չեն ծերանում, որ նրանք միայն գրքերում են լինում...

# ՎԱՐԴԱՆԻ ՍՐՏԻ

ՄԻՔԱՅԵԼ ՀԱԿՈԲՅԱՆ

Սիրելի երեխաներ, ես անչափ շատ բան ունեմ ձեզ պատմելու, բայց ձեր ամսագրի էջերը սուղ են և ես չեմ կարող ամեն ինչ պատմել: Չեմ կարող պատմել նույնիսկ միայն նրանցից մեկի մասին, ում կյանքն ինձ լույս է թվում ու զուլալ աղբյուր: Այդ մեկը Վարդան Տոնիյանն է: Նա ձեզ պես երեխա էր, դպրոց էր գնում, դաս սովորում ու տարվում խաղով: Պատերազմի ժամանակ նա դարձավ տանկային ուսումնարանի սան, ապա սպա:

Նա գնաց պատերազմ, երբ քսաներկու տարեկան վաշտի կոմերիտական էր: Պատերազմում նա հանդես է բերել անօրինակ խիզախություններ, որոնց համար արժանացել է «Արիության համար» մեդալի, Հայրենական պատերազմի երկրորդ աստիճանի և Կարմիր աստղի շքանշանների:

Նրա մասին ես գրել եմ վավերագրական վեպ, որը, հույս ունեմ, լույս կտեսնի եկող տարի: Երբ դուք կարդաք այդ վեպը, կիմանաք նրա պայծառ կյանքի պատմությունը: Իսկ մինչ այդ ես կուզենայի, որ դուք ուշադրությամբ ընթերցեիք հարազատներին գրած նրա ռազմաճակատային նամակներից քաղվածքներ: Դրանք Վարդանի սրտի բաբախումներից են: Լսիր այդ բաբախումները:



«...Մայրիկ, հարազատս, ես գիտեմ, որ դու և մեր բոլոր տանեցիները ապրումներ եք ունենում այս բաժանման առթիվ... Երևի չես թողնում, որ նվագեն իմ սիրած ձայնասկավառակները. պետք չէ, թանկագինս: Ես ուզում եմ, որ դուք նվագեք... Այնպե՜ս եմ ցանկանում դրանք լսել: Թանկագին մայրիկ, խնայիր քեզ: Խնայիր քեզ, և մենք դեռ միասին կպարենք իմ հարսանիքին: Ճիշտ չէ՞:

...Ես արդեն բավական տարիքով եմ: Հարկավոր է ոտքի կանգնել, ինքնուրույն կյանք սկսել: Մեր արդի կյանքը լավագույն դպրոց է: Նա ուսուցանում է, ամրապնդում բնավորությունը: Այդ կյանքն է սովորեցնում, իսկ եթե չես ուզում սովորել, ապա այնպես կըմտրակահարի, որ վայր կընկնես: Չընկնելու համար հարկավոր է լինում ձգվել, սովորել: Ինձ համար բոլորովին չեմ անհանգստանում: Միշտ ձեր մասին եմ մտածում:

...Վերջին մարտում թեթևակի վիրավորվել եմ: Այդ բառը քեզ, իմ հարազատ մայրիկ, չպետք է վախեցնի: Թեթև եմ վիրավորվել: Ասեղով ծակելիս ավելի շատ է ցավում... Այն վերքը, որ ես եմ ստացել, պատվավոր է. ոչ ոք չի կարող ասել, թե այն ժամանակ, երբ ամբողջ ժողովուրդը պատերազմ էր մղում, ես նստել եմ տանը, թաքնվել եմ թիկունքում:

...Թանկագին մայրիկ, ես գիտեմ, թե ինչպես եք դուք ապրումներ ունենում ինձ համար, ինչպես ուզում եք ինձ տանը տեսնել, բայց դա այժմ անհնար է: Պատերազմ է: Մեզ՝ երիտասարդներիս, վիճակվել է դըժվարին, վտանգավոր, բայց և պատվավոր խնդիր, ու մենք դա պարծանքով կկատարենք:

## ԲԱՐԵՎ. ԵՂԲԱՅՐ ՃԱԳԱՐ ԵՎ ԵՂԲԱՅՐ ԱՂՎԵՍ

Ողջույն ձեզ եղբայր Գայլից: Բարևներ հաղորդեցեք մորաքույր Միտուսին և բոլոր մյուսներին:

Եղբայր Աղվես, ես նեղացած եմ քեզանից. եղբայր Ճագարը գրել չգիտե, բայց չէ՞ որ դու հինգերորդ դասարանում ես: Կարո՞ղ ես, չէ, քո եղբոր փոխարեն գըրել:

Ես կռվում եմ կուպրե խրտվիլակի դեմ: Դա այնպիսի վատ խրտվիլակ է, որ ասել չի լինի: Զարկում ենք, զարկում, իսկ նա դեռ դիմադրում է: Բայց շուտով նրա վերջը կտանք և ցանցի մեջ կգցենք, կնստեցնենք վանդակը: Գուցե եղբայր Ճագարն ասի՝ իսկ եթե խըրտվիլակը կպչի ձեռքների՞ս: Իսկ մենք ձեռնոցներ կը՛հագնենք, նրան վանդակի մեջ կգցենք և ձեռքներս կհանենք ձեռնոցներից:

Այ, թե ինչով ենք մենք զբաղված, իմ եղբայրներ: Խնդրում եմ գրել ինձ: Գրեցեք ամեն ինչի մասին. ուզում եմ իմանալ, թե ինչպես են ապրում մերոնք՝ և՛ պապիկը, և՛ տատիկը, մորաքույր Սոնյան, քեռի Սաշան, մայրիկը, Թամարան: Այ, թե ինչ առաջադրանք եմ տալիս ձեզ: Ամուր համբուրում եմ ձեզ:

Ձեր քեռի Ռիմուս

Նամակը գրված է 1944 թ. նոյեմբերի 24-ին, սոճիների տնակում՝ ձեր թանկագին բարեկամ բժիշկ Այբոլիտի հետ:



# ԲԱԲԱԽՈՒՄՆԵՐԻՑ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Ինձ անչափ ցավ է պատճառում՝ տատիկի հիվանդանալը. Նրա հիվանդությունն ինձ ցնցեց: Իմ սիրելի տատիկ: Իմ փոխարեն՝ պինդ համբուրիր նրան: Եվ նրան մշտապես հաղորդիր ամենաջերմ ողջույններս: Ո՞ր բժիշկների մոտ է նա եղել, ի՞նչ են ասում բժիշկները: Ո՞նց է ապրում քեռի Աշոտի մոտ: Ի՞նչ կա Համոյից, Գուրգենից:



...Հայրիկ, մեր բաժանումից հետո ես բավական արիացել եմ: Շատ բան եմ տեսել, ընդլայնվել է իմ աշխարհայացքը: Լավ բան շատ եմ տեսել, նաև վատը: Գամ, շատ բան կպատմեմ: Շատ անգամ եմ նայել մահվան աչքերին: Մի քանի անգամ այրվածքներ եմ ստացել, վիրավորվել եմ: Գիտեմ, որ ինձ համար քո ունեցած ապրումները ավելացրել են գլխիդ ճերմակը, մըտահոգվելդ չի թողնում, որ գիշերներն էլ քնես:

Բայց, հայրիկ, ես հավատում եմ, որ ամեն ինչ լավ կլինի: Ես անպայման տուն կվերադառնամ:

...Հաճախ ես ու ընկերներս հավաքվում ենք և հանձնվում հուշերին: Ամենից թանկագին հուշերը կապված են տան, մայրիկի ու հայրիկի և մեր երջանիկ մանկության հետ: Այնպիսի մանրունքներ ենք հիշում, որոնք մի այլ ժամանակ միտքներս չէին գա: Հիշում եմ քեզ, որքան էիր չարչարվում մեզ համար, ուզում էիր լավ հագցնել, կերակրել, ամեն ինչ համեղ պատրաստել: Անգին մայրիկ, գիտեիր, թե մեզանից յուրաքանչյուրն ինչ է սիրում, համբերատարությամբ, հաճախ ինքդ քեզ զրկելով, մեզ համար էիր պատրաստում: Երբ մենք տանը չէինք լինում, չէիր էլ ուզում որևէ բան պատրաստել, ձեռքերդ թուլանում էին, գիտեիր ինչպես հագցնել մեզնից յուրաքանչյուրին, որ լավ լինի: Հաճախ եմ հիշում ձյունասպիտակ անդրավարտիքս, սիրելի շապիկս՝ կույպոնից: Այդ բոլորը քո ձեռքերով էին պատրաստվում, սիրելի մայրիկ, դրանք լվանալիս մոռանում էիր հոգնությունը՝ իմանալով, որ տղադ է հագնելու: Հիշո՞ւմ ես, մայրիկ, երբ ես փոքրիկ էի, կարծում էի, թե մայրիկը հոգնածություն չըգիտե: Հիշում եմ հայրիկին, թե ինչպես էր աշխատանքից գալիս. թռչում էինք նրա շալակը, կռվում էինք հետը: Երեկոները նրա մահճակալն էինք ելնում ու ականջ դնում նրա հեքիաթները...

...Միայն այստեղ, տնից հեռու ես ընկալում ընտանեկան կյանքի ամբողջ հաճույքն ու գեղեցկությունը:

...Ես իմ յուրաքանչյուր քայլը չեմ մոռանում, վեր եմ լուծում, եզրակացություն անում, նկատում եմ սըխալներս և ձգտում չկրկնել: Եթե ես որևէ հիմարություն եմ անում կամ որևէ անփութություն թույլ տալիս, երկար ժամանակ չեմ կարողանում ներել ինձ: Դա լավ է:

Իմ ծնողներով, քույրիկով և եղբայրով, առհասարակ մեր ամբողջ ընտանիքով, ես կարող եմ հպարտանալ: Մեր ընտանիքի լավագույն ավանդներին ես կձգտեմ հետևել: Դրանք լավ ավանդություններ են:



...Այստեղ ստուգվում է բնավորությունը, ընկերությունը, վերաբերմունքը մարդկանց նկատմամբ: Բնավորությունն ամրապնդվում է: Մարդը, եթե նա իսկական մարդ է, արիանում է, դառնում ազնիվ, իսկ ոմանք գլորվում են, չեն դիմանում:

Մեծ սեր է ծնվում կյանքի նկատմամբ, իսկական ձևով ես սկսում ապրել: Վախկոտը չգիտի կյանքը, չի սիրում կյանքը: Նա կառչում է նրանից: Դառնում ենք ինքնուրույն, աչալուրջ, հեշտ ենք տանում դժվարությունները:

...Մեզ մոտ մեծ ուրախություն է: Բլինդաժում կատու է երևացել՝ մոխրագույն, գեղեցիկ: Նրա համար մի ամբողջ իրարանցում եղավ, բոլորն ուզում էին նրան իրենց մոտ տանել, վազվզում էին, որսում: Ամեն մեկն

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՋՈԿԱՏԱՎԱՐԸ

Երբ հնչեց մեծ դասամիջոցի կանչը, ամբողջ 6-րդ «դ»-ն դուրս թափվեց:

Ամբողջ դասարանը պարում, ցատկում էր ձյան տակ: Աղջիկները դարձան ձնագնդիների թիրախներ: Իսկ հետո հևիհև վազեցին դասարան: Մնացածը շարունակվեց դասարանում: Օդում թռան ձյան ու կավճի կտորները. թենիսի գնդակների պես պարեցին կավճոտ ջնջոցները:

Հետո միայն 6-րդ «դ»-ն նկատեց, որի կիսաբաց դռան մոտ կանգնած էր դպրոցի կոմերիտմիության առաջին քարտուղարը՝ 8-րդ դասարանցի Գեղամը: Ամբողջ դպրոցը, Գեղամն էլ գիտեր, թե ինչ անկարգ ու ծույլ դասարան էր 6-րդ «դ»-ն:

— Ես ձեր ջոկատային ջոկատավարն եմ լինելու: Դասերից հետո կմնաք,— խիստ, առանց աչքը թարթելու ասաց Գեղամը:

— Այ քեզ բա՛ն,— լսվեց նրա գնալուց հետո,— ջոկատավարն ինչների՞ս է պետք:

Բայց մի քանիսը, որոնք գիտեին Գեղամին, ուրախացան: Դե, նրան ո՞վ չգիտեր. ութերորդցի էր, համաքաղաքային դպրոցական օլիմպիադաներում էր հաղթել, հանդես եկել ռադիոյով, հեռուստատեսությամբ: Լավ մարզիկ էր, պարող, նվագող, նկարող: Նրա պատրաստած ռադիոընդունիչների մասին շատ-շատերը գիտեին:

Հանդիպումը սովորական եղավ: Պիոներական սենյակում Գեղամը դրուժինայի պատի թերթըն էր ձևավորում, երբ նրանք եկան:

— Ընկեր Գեղամ, մեզ նվագել կսովորեցնե՞ք... իսկ պարե՞լ... իսկ լողա՞լ,— գրոհեցին միանգամից նրան ճանաչողները:

Գեղամը լուռ մնաց մի րոպե: Դա երևի երկար թվաց: Հետո խիստ վրա բերեց.

— Միայն մի պայմանով՝ բացակայողներ այլևս չպետք է լինեն, իսկ վատ սովորողներ՝ առհասարակ:

Հետո, ասես ի միջի այլոց, ասաց.

— Դպրոցում շուտով հանդես է լինելու, մրցություն դասարանների միջև՝ երգից, պարից, ով ինչ շնորհք ունի, մի խոսքով: Եկեք մրցենք մյուսների հետ: Ժամանակ կա, կսովորենք:

Բոլորն աշխուժացան: Շնորհալիներ դասարանում իրոք կային: Էմման երգում է, Նաիրան ակորդեոն է նվագում, երաժշտական դպրոց է հաճախում, Գևորգը կիթառ է նվագում, իսկ Հրաչիկը՝ թմբուկ:

— Մի խոսքով,— շարունակեց

*էլ ուզում է նրան փաղաքշել, գուրգուրել, ամենքն էլ հիշում են, որ այդպիսի կատու ունեին տանը: Ոմանք առաջարկում են նրան կերակրել սուպով, մյուսները զայրույթով մերժում են և կաթ առաջարկում, երրորդները առաջարկում են նրան տալ մեր ստացած ամբողջ մսաբաժինը: Եվ այսպես մեր անձնակազմն իր հինգերորդ անդամն ունի: Բայց այժմ բոլորին տագնապ է պատել՝ ի՞նչ անել նրան վաղը. մենք մարտի պիտի գնանք, իսկ նրան կարող են վիրավորել և սպանել: Ոչ, չի կարող պատահել: Իսկ նա կարծես հասկանում է, որ իր մասին եմ գրում, իջել է երրորդ տախտակամածից, նստել սեղանին և մռռում է: Վաղը մարտի ենք գնում, չենք կարող նրան էլ տանել, չէ՞ որ չենք կարող նրան ուրիշներին հանձնել:*



*Որքա՜ն ենք մենք բոլորս թախծում ընտանեկան խաղաղ կյանքի համար: Կատուն հիշեցնում է տունը, ընտանիքը, տրտմություն է բերել ու իր մռռոցով, այստեղ, հրի ու բոցի մեջ, ընտանեկան հարմարակեցություն է առաջացրել:*

*...Երեկ իմ գետնափորը եկավ ընկերս՝ Բառանովը... Այնքան հոգատար, ուշադիր ենք իրար նկատմամբ: Մարտադաշտում ես Բառանովին մի քանի անգամ փրկեցի, նա էլ ինձ ազատեց: Մեր ամբողջ մարտական ուղին միասին է անցել, միևնույն արկով ենք վիրավորվել: Այդ նրա խփված մեքենան եմ ես մարտադաշտից դուրս բերել, միասին էինք հոսպիտալում և հիմա էլ կրկին միասին ենք: Մեզ հենց այդպես էլ կոչում են՝ «ախպերացուներ»: Նա լավն է, խելոք ու անգին տղա է՝ 24 տարեկան, դեմքով շատ ջահել, համարյա երեխա, բայց մարտում սարսափելի է: Նա էլ է երկու անգամ պարգևատրվել: Տեսնո՞ւմ ես, սիրելի մայրիկ, ինչ լավ ընկեր ունեմ: Մենք երազում ենք պատերազմից հետո*

ջոկատավարը,— ամեն մեկդ մի բանով պետք է աչքի ընկնեք:

— Էհ, գնանք տուն, ուշ է,— հոգոց հանեցին Անդրանիկ Դավթյանն ու Քյարամ Բաղոյանը:

Գեղամը նրանց ոչինչ չասաց, միայն խիստ աչքերի հայացքն ուղղեց: Դա նույնպես չօգնեց: Եթե այդպես հե՜շտ լիներ ամեն ինչ: Բայց Գեղամը չհուսահատվեց: Դասերից հետո ամեն օր նա իջնում էր իր դասարանցիների մոտ, ստուգում՝ ո՞վ է բացակա, ո՞վ է վատ ստացել:

— Երկու ստացողները այսօր թող մնան դասերից հետո,— մի օր էլ ասաց նա:

Անդրանիկը, Քյարամը, Սամվելը, մի քանիսը, որոնք վատ էին սովորում, հայացքներ փոխանակեցին: Նրանց հետ մնացին լավ սովորողներից մի քանիսը և իրենց ջոկատավարը: Ամեն օր Գեղամը հետևում էր՝ առաջընթաց կա՞, թե՞ ոչ: Ստիպված մի քանիսի ծնողներին կանչեց և դասղեկի հետ ամեն ինչ պատմեց նրանց: Պատահեց նաև, որ Գեղամը մի քանի շաբաթ ուշ գնաց տուն: Պատահեց նաև, որ մի քանի անգամ հասավ մինչև Ծիծեռնակաբերդի այս ու այն անկյունը: Տղաներից երկուսը ծխում էին:

— Վերջին անգամ լինի,— ասաց մի անգամ:— Դեռ ուզում եք ըմբշամարտով պարապել, ուժե՞ղ լինել... Վերջին անգամ եմ ասում, տեսեք...

Իսկ հիմա նրանք այլևս չեն ծխում և երազում են դառնալ ուժեղ և հայտնի մարդիկներ: Անցան շաբաթներ: Բոլորը հիշում են դպրոցի տարեսկզբի ուրախ հանդեսը: Դահլիճը լիքն էր ու հանկարծ պատանի հաղորդավարը հայտարարեց.

— 6-րդ «դ»-ի աշակերտները կկատարեն...

Հիմա ամեն մեկը հիշում է, թե ինչպես ծափահարեցին իրենց: Իսկ նրանց հայացքները թեքվել էին ընկեր Գեղամի կողմը: Դրանք շնորհակալական հայացքներ էին:

Անդրանիկ Դավթյանը երկար ժամանակ լավ չէր սովորում: Ու մի օր էլ ջոկատային խորհրդի հավաքում ընկեր Գեղամը հանկարծ ասաց.

— Վկկապների ստուգման պատասխանատուն վաղվանից Անդրանիկն է:

Բոլորը կարմացան: Անդրանի՞կը, ախր, նա հենց ինքը չի կապում, բայց 6-րդ «դ»-ն հաջորդ օրն ասես հեղափոխվել էր: Անդրանիկը մաքուր արդուկված վզկապ էր կապել: Իսկ մյուսնե՞րը: Թող որևէ մեկը փորձեր չըկապել, Անդրանիկի ձեռքից չէր ազատվի: Ջոկատավարի վստահությունը հավատ ներշնչեց տղային: Դասերից հետո նա քայլում էր տուն ու մտածում. «Իսկ ինչո՞ւ իսկապես լավ չսովորել: Մաթեմատիկան դժվար է, ախր: Բայց եթե ցանկանա: Այ, քանի առարկա արդեն հասցրեց, մնացել է երկրաչափությունը: Դժվար է»: Իսկ մի ներքին ձայն ասում էր՝ «Անդրանիկ, պիտի հասցնես, արդարացնես բոլորի վստահությունը: Եթե դու կարողացար թմբուկ խփել սովորել, պարել, լողալ, դա էլ կհասցնես»: Նա մի ներքին ուրախություն զգաց և հիշեց նաև իրենց ջոկատի «Փարվանա» պատի թերթը: Առաջին անգամ նրա անունը գրվել էր

*միասին մեր տուն գալ: Ա՛յ, այն ժամանակ դու էլ կըտեսնես, թե ինչ լավն է նա:*

*Ներեցեք, որ ծանրոց ստանալուց անմիջապես հետո չգրեցի ձեզ: Հավատացեք, ժամանակ չկար: Այ, հիմա էլ հազիվ մի րոպեով եմ կտրվել: Մոտորն աշխատում է: Ամեն րոպե ու ամեն վայրկյան պատրաստ ենք կրակ բացելու: Ես ձեզ գրում եմ՝ ինձ համար մի՛ անհանգստացեք, սպասեցեք հանդիպման ժամին»:*

*Վերջին տողերը, երեխաներ, Վարդանը գրել է 1945-ի փետրվարի 6-ին, Արևելյան Պրուսիայում, իր ինքնագնացի մեջ, երբ մոտորն աշխատում էր: Բոբրույսկի մոտից էր նա այդտեղ հասել՝ Բելոստոկի վրայով, անընդհատ մարտեր մղելով:*

*Հաջորդ օրը՝ փետրվարի 7-ին, նա նորից է մարտի նետվել, և դա նրա վերջին մարտն էր: Գիշերվա ժամը 2-ին նրա ինքնագնացը ֆաուստպատրոնով խըփվել է: Վարդանը վիրավորվել է, բայց առաջինը ուշքի գալով, այրվող ինքնագնացից դուրս է բերել իր անձնակազմի նշանառուին, ապա վարորդին և վերջապես չորրորդ անդամին, և այդ ժամանակ էլ ֆաշիստական գնդացրի կրակահերթը խոցել է քսաներեքամյա հերոսի սիրտը:*

*Նրա աճյունը հեռավոր Ֆրայմարկտից փոխադրվել է Ստեփանակերտ: Այստեղ, մանկական զբոսայգում, նրա գերեզմանի վրա հուշարձան է կանգնեցված: Վարդան Տոնիյանի հուշարձանին ամեն օր թարմ ծաղիկներ են դնում նրա անունը կրող դրուժինայի պիոներները, որոնք իրենց կոչում են «Վարդանականներ»:*



հոդվածի տակ, ինքը հեղինակ էր մի նյութի, որն ուրիշներն էին կարդալու: Նա ուրախ նայեց շուրջը և կարմրեց:

Այն 6-րդ «դ»-ն, որը համարվում էր դպրոցի ամենաանկարգապահ դասարաններից մեկը, վերջերս «Ուրախների և հնարամիտների» դպրոցական մրցույթում գրավեց առաջին տեղը: Կոմերիտմիության Շահումյանի շրջկոմի կողմից ջոկատը և նրա ջոկատային ջոկատավար Գեղամ Օհանյանը արժանացան պատվոգրի և դիպլոմի: Դրանից հետո էր, որ ընկեր Գեղամը մտավ դասարան ու ասաց. «Գնում ենք էքսկուրսիա՝ Էջմիածին ու Գեղարդ»:

Այժմ այդպիսի արշավների նրանք շատ են գնացել: Իրենց տպավորությունները գրի են առել ջոկատի ալբոմում և իրենց օրագրերում:

«Թե իմանաս ինչ ջոկատավար է ընկեր Գեղամը,— գրել էր Սամվելը Տաշքենդի իր հասակակցին:— Ես առաջ չէի սիրում նրան, փախչում էի նրա խստությունից: Բայց նա ինձ սովորեցրեց կզալ խստության արժեքը: Առաջ ծխում էի, հիմա ամոթով եմ հիշում: Ընկեր Գեղամը շատ լավն է, և ես հիմա նրան սիրում եմ, ինչպես երբեք: Հիմա, ամռան՝ շոգերին, նա մեկ հաճախ է տանում Հրազդանի կիրճը լողալու: Ազատ ժամերին կարդում եմ նաև: Ես ուզում եմ արդարացնել մեր ջոկատավարի վստահությունը...»

Ես չասացի, որ Գեղամը այդ բոլորը հասցնում է կատարել՝ նախապես ամեն ինչ պլանավորելով: Նրա երազանքը ռադիոինժեներ դառնալն է: Ազատ ժամերին նրան կգտնեք միմիայն գրադարանում: Նա գրքերի հետ է, կյանքի գաղտնիքները սովորելու ճանապարհին: Ուրեմն ինչո՞ւմն է գաղտնիքը:

Ինչպես 6-րդ «դ» դասարանը սիրեց իր ջոկատավարին: Եթե շատ եք ուզում իմանալ, ահա հասցեն՝ Աջափնյակ, № 118 դպրոց, 7-րդ «դ» դասարան: Այո, այո, յոթերորդ. չէ՞ որ հիմա նրանք փոխադրվել են հաջորդ դասարան, մի տարով էլ մեծացել...

*ՌՈԲԵՐՏ ԴՈՎԼԱԹՅԱՆ*



# ԱՇՈՒՆ

*ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

Արոտներում մերկ ու տխուր
Լոկ քամին է թափառում,
Խտանում են գույները թույլ
Ոսկեմշուշ դաշտերում։

Գետը զուլալ գրկում առած
Տերևներ է տանում ծով,
Մայր անտառն է ճամփում նրանց
Տրտմաթախիծ խշշոցով։

Ամպ ու ծաղիկ բոցով անտես
Մի-մի խարույկ են դարձել,
Խոնավ ու լուռ այրերի մեջ
Մուժն է հոգնած ծանրացել։

Տուն է բերում արոտներից
Ներին իր հոտը անձայն,
Փաթաթվել է մամռոտ ժայռին
Ջրից ելնող մի կածան։

Արևն հոգնած մայր է մտնում
Գագաթների թիկունքով,
Ինձ աշունն է ճեռքով անում
Հեռուն չվող կռունկով։



# Ամենալավ բանը

ՕԼԳԱ ՍԱՆԱՀՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Եղբայրս, երբ դպրոցից տուն էր վերադառնում, բակը մտնելուն պես, պայուսակը դնում էր ցանկապատի վրա ու, խառնըվելով երեխաներին, սահնակ էր խաղում, վազում, վազվզում ու այդպես հոգնած, քաղցած ու ձնակոլոլ տուն էր ընկնում:

Այդ օրը ես ու տատս ռազմաճակատից ստացված հորս նամակն էինք կարդում, երբ լուսամուտից նկատեցի, որ եղբայրս մտավ բակը, պայուսակը դրեց ցանկապատի վրա ու ամեն օրվա նման սկսեց խաղալ: Բայց նա բաճկոնով էր, նրա հագին վերարկու չկար: Ի՞նչ է արել վերարկուն, մտածեցի ես:

Երբ տատս երրորդ անգամ կարդաց հորս նամակը և զանազան խորհրդածություններ արեց զինվոր որդու նամակի շուրջը, հուզմունքից աչքերը լցրեց ու դատարկեց, նոր միայն ես ասացի.

— Տատիկ, Կարենը առանց վերարկուի է եկել դպրոցից:

— Առանց վերարկուի՞: Ո՞վ,— մտամոլոր հարցրեց նա:

— Էլ ո՞վ՝ Կարենը: Հրեն բակում խաղում է:

— Իսկ ի՞նչ է արել վերարկուն,— պատուհանից դուրս նայելով ասաց տատս,— չլինի՞ թե մոռացել է դպրոցում:

— Ի՞նչ իմանամ:

— Թե՞ կորցրել է:

— Ի՞նչ իմանամ:

— Դու էլ՝ «ինչ իմանամ» հա «ինչ իմանամ»: Գնա կանչիր, կմրսի՝ կհիվանդանա:

Ես երեք տարով Կարենից մեծ էի և շտապեցի կատարել ավագ քրոջ իմ պարտականությունը:

— Կարե՛ն, ա՜յ Կարեն, տու՛ն արի,— դուրս գալով պատշգամբ, կանչեցի ես:

Կարենը պայուսակն առած, վազեվազ եկավ: Կարմրած, սառած, կանգնեց տատի առաջ:

— Հը, ի՞նչ կա տատի ջան, արդեն իմացե՞լ եք:

— Ի՞նչն ենք իմացել, ու՞ր է վերարկուդ,— խստությամբ հարցրեց տատս:

— Ուրեմն դեռ չե՞ք իմացել: Ես էլ կարծեցի, թե տղաներին եք դրսում հանդիպել:

— Չէ՛, ոչ մի տղայի էլ չենք հանդիպել: Ինչ է, աչքալուսա՞նք պիտի տային, թե՝ թոռդ վերարկուն կորցրել է:

— Իսկի էլ չեմ կորցրել:

— Հապա ի՞նչ ես արել: Փո՞խս է ընկել դպրոցի հանդերձարանում:

— Իսկի էլ չէ:

— Հապա ի՞նչ:

— Վերարկուս նվիրել եմ ընկերոջս,— ասաց նա ու պայուսակը դրեց գրասեղանին:

— Ճիշտ չես ասում,— վարանումով շշնջացի ես:

— Չի՛ կարող պատահել,— գոչեց տատս, հույսը դեռ չկտրած:

— Ինչու՞ չի կարող պատահել,— վիրավորված ու տաքացած գոչեց Կարենը:— Նվիրել եմ, հե՛նց նվիրել եմ:

Տատս հուսահատ նստեց թախտին, բայց և շարունակեց մենամարտը:

— Համեցեք խնդրե՜մ, նվիրե՜լ է,— ձայնը բարակացնելով ծաղրեց նա՝ ձեռքերը օդում տարածելով (ջահել ժամանակ տատս բեմում խաղացել էր):— Հազիվ էինք օրդեր ու տալոն ճարել, հազիվ էինք խանութից-խանութ ման եկել, քո չափով վերարկու ճարել, որ տանեիր ու տայիր ուրիշի՞: Այսպես էլ բա՞ն կլինի:

— Տատի, մի՛ ասա՝ տվեցիր, ասա՝ նվիրեցիր,— նախկին հանգստությունը գտնելով, անվրդով ասաց Կարենը:





— Դեռ նեղանում էլ է, նկատողություն էլ է անում։ Մի հարցնող լինի՝ սիրելի որդյակ, իսկ դու ուրիշ վերարկու ունե՞ս։ Ի՞նչ պիտի հագնես այս ձյուն-ձմեռ օրով։

— Ես կհագնեմ իմ տաք բաճկոնակը,— նույն անվրդով ձայնով շարունակեց Կարենը։

— Հա՛, հա՛, հա՛,— բաճկոնա՜կ,— ծիծաղեց տատս,— բաճկոնա՜կ...

Ճիշտն ասած, ես էլ չկարողացա ծիծաղս պահել։ Այդ բաճկոնը մի ժամանակ Կարենի պարծանքն էր, իսկ այժմ բավականին անմխիթար տեսք ուներ։ Ես այդ միջոցին Կարենին պատկերացրի դեղին բաճկոնով և ավելի ուժգին ծիծաղեցի։ Բայց իմ դրությունը նախանձելի չէր, ես չգիտեի, թե ում կողմը լինեմ՝ տատի՞ս, թե՞ Կարենի։ Տատիս փաստարկները ինձ համոզիչ էին թվում, ես էլ էի մորս հետ մասնակցել Կարենի վերարկուի «ձեռք բերմանը», բայց և միաժամանակ ինձ դուր էր գալիս Կարենի ընկերասիրությունը և վճռականությունը։

— Պատերա՜զմ, հայրը բանակու՜մ, հազար ու մի պակասություն...— միջոց չէր տալիս տատս։

— Տատի ջան, տատի,— մի կերպ ընդհատելով նրա խոսքը, ասաց Կարենը,— հիշու՞մ ես, որ չորրորդ դասարանում հիվանդացա ու երկար պառկեցի։

— Հիշում եմ, հետո՞ ինչ,— հեգնեց տատս։

— Հիշու՞մ ես, տատ, որ դու նստում էիր մոտս ու գրքեր էիր կարդում։

— Այդ էլ եմ հիշում, բայց դա ի՞նչ կապ ունի վերարկուիդ հետ...

— Հիշու՞մ ես, Լենինի մասին դու մի գիրք կարդացիր...

— Այո, Լենինի մասին էլ եմ կարդացել,— գոհունակությամբ վրա բերեց նա։

—...Դու կարդացիր այն մասին, որ Լենինը իր մուշտակը նվիրում է Կամոյին։ Դու կարդացիր այդ գիրքը և ասացիր...



— Ի՞նչ ասացի։

— Ասացիր, Կարեն, տես, որ դու էլ լինես Լենինի նման բարի, մարդասեր, ընկերոջը օգնության հասնող...

Տատս հոգոց քաշեց և ձեռքը ակամայից տարավ մազերին։

— ... Հետո, տատի ջան, դու ինձ ասացիր՝ «խոստանու՞մ ես, Կարեն, որ դու էլ այդպիսին կլինես»։ Եվ ես ասացի՝ «Խոստանում եմ»։

Տատիկս պարտված էր, ես խղճացի նրան, նա այժմ նայում էր ոչ թե Կարենին, այլ եղյամապատ լուսամուտին, որտեղից ոչինչ չէր երևում, նրա միտքը լարված աշխատում էր, և նա հանկարծ սկսեց փռշտալ։ Փռշտ, փռշտ...մեկ, երկու, երեք, չորս, հինգ... և հենց փռշտալու ժամանակ էլ երևի մտքերը հավաքեց։ Տատը հեշտ պարտվողներից չէր։

— Այո, իհարկե, հիշում եմ, դու այն ժամանակ ճիշտ այդպես էլ ասացիր, Կարեն,— անսպասելիորեն զվարթացավ նա,— դա մի հրաշալի գրքույկ էր։ Այո, ես եմ կարդացել քեզ համար։ Ես այդպիսի՜ տատիկ եմ եղել ձեզ համար, ոչինչ չեմ խնայել, ոչինչ, ո՛չ առողջություն, ո՛չ աչքի լույս։ Հապա՜, այդպիսի տատիկ եմ եղել։

Տատս, որ նեղ տեղից ազատվել էր, դարձյալ հպարտ էր, անկոտրում։ Ես թաքուն ուրախացա։

— Եվ դու ես մեղավոր, Կարեն, որ մենք իրար չհասկացանք,— շարունակեց տատս,— փոխանակ հասկացնելու, բացատրելու...

— Իսկ դու թողեցի՞ր... Մի գլուխ տալոն, օրդեր, պատերազմ...

Ես մեջ խառնվեցի.

— Կարեն, գոնե կասեիր, թե ում ես նվիրել։

— Նվիրել եմ նրան, ով ինձնից ավելի կարիք ուներ։

— Բավական է։ Այդքանը բավական է։— Ձեռքը կտրուկ վեր բարձրացրեց տատս ու խիստ հայացքով նայեց ինձ։— Իմ Կարենը գիտե, թե ում կնվիրի վերարկուն։

Այս ասելով, տատս արագ, մի տեսակ տարօրինակ քայլվածքով գնաց խոհանոց։ Նա այնտեղ աչքերը սրբեց։ Միայն ես տեսա։



# ԵՐԲ ԹԱԳԱՎՈՐԸ ՔՆԱԾ Է

ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑ



Մի գյուղացի կեսօրին եզներն արձակում է, որ արածեն, ինքը գլուխը դնում է քարին, քնում։ Կարճ քուն առնելուց հետո արթնանում է տեսնում՝ եզները չկան, գողացել են։

Գնում է ուղիղ թագավորի մոտ։

— Թագավորն ապրած կենա,— ասում է,— եզներս գողացան տարան, մնացել եմ շիվար։

— Է, դու որտե՞ղ էիր, որ գողացան,— հարցնում է թագավորը։

— Ես քնել էի, գողացան։

— Ինչու՞ էիր քնել, հիմա՛ր,— բարկանում է թագավորը,— դու չգիտե՞ս, որ քնած մարդու ապրանքը միշտ էլ վտանգի տակ է։

— Թագավորն ապրած կենա,— պատասխանում է գյուղացին,— ես կարծում էի դու արթուն ես, դրա համար էլ քնեցի, եթե գիտենայի, որ թագավորը քնած է, ես չէի քնի։



# ԳՈՎԱԲԱՆՎԱԾ ԵԶԸ



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մի խեղճ գյուղացի ծերացած և ուժատ եզ ուներ։ Չգիտեր ինչ աներ, ինչպես ազատվեր բեռ դարձած անասունից։ Որոշում է տանել շուկա, ծախել։ Բայց վար ու ցանքից բացի, կյանքում ուրիշ բան արած չկար, առևտրի փորձ չուներ՝ իր օրում ոչ բան ուներ գնած, ոչ էլ, մանավանդ, ծախած։

Դիմում է դրացուն, թե՝

— Էսպես ու էսպես, եզս հալից ընկել է. ինչ կլինի՝ օգնես, տանենք շուկա, ծախենք։

— Աչքիս վրա,— պատասխանում է դրացին,— էնպես սաղացնեմ, քյահլան ձիու տեղ։ Դու միայն ծախելու բան բեր։

Շուկայում դրացին, որ մի խոսքաշեն ու ճարպիկ մարդ է լինում, սկսում է.

— Ա՛յ եզը, լա՛վ եզը... Է՛ս կողմ եկեք, մի էստե՛ղ նայեցեք։ — Հավաքվում են մարդիկ, և սա շարունակում է ավելի ոգևորված. — Էս եզը տեսնո՞ւմ եք... Սա հո եզ չի, աստված վկա, գոմեշ է, գոմեշ... Էն խաչը, էնքան զորեղ է, որ առանց զույգի գութան է քաշում, էնքան խելոք, էնքան հեզ, որ թե՛ լծել կարող եք, թե՛ բարձել... Քորփեքիս արևը վկա, կարիքը չխեղդեր՝ սրանից բաժանվողը չէի, ձեռքս չէր գնա, շուկա չէի բերի...

Եվ այլն, և այլն՝ այսպես ու այս ոգով։

Բոլորը հետաքրքրված լսում են, սկսում են դիտել, գնել ապրանքը։ Բայց ամենից ուշադիր եզան տերն է լսում։ Լսում է, լսում, նայում է, նայում, մեկ էլ դառնում է դրացուն, ասում.

— Ախպեր, դրկից ջան, ես իմ եզը չեմ ծախում... Որ էդքան լավն է, կտանեմ ինքս կբանեցնեմ։

Ասում է ու չվանի ծայրը առնում դրացու ձեռքից, եզը ետ տուն տանում։




## ՍՏՈՐԵՐԿՐՅԱ ՕՎԿԻԱՆՈՍ

Գիտնականները հաստատել են, որ Արևելյան Սիբիրի տերիտորիայում կա տաք օվկիանոս, որն իր մակերեսով հավասար է Բարենցի, Կասպից և Սև ծովերի մակերեսներին, այսինքն՝ 3 միլիոն քառակուսի կիլոմետր է։ Նրա հարավային սահմանն անցնում է Կրասնոյարսկով, Սեմիպալատինսկով, Կուստանայով, որտեղ երկրի մակերևույթից մինչև օվկիանոսը եղած հեռավորությունը ընդամենը մի քանի տասնյակ մետր է։ Ջրի ջերմաստիճանն այստեղ +5— —10° է։ Որքան դեպի հյուսիս ենք գնում, այնքան խորն է ջրի շերտը և ջերմաստիճանը ավելի բարձր է։ Օմսկի և Խանտա-Մանսիյսկի շրջանում օվկիանոսը գտնվում է երեք կիլոմետր խորության վրա և ջրի ջերմաստիճանը հասնում է + 100, իսկ տեղ-տեղ՝ + 125 աստիճանի։



## ԵՐԵՍՈՒՆ ՄԻԼԻՈՆ ՏԱՐԵԿԱՆ ԾԱՌԸ

Երկրաբանների մի խումբ պեղումներ էր կատարում Որոտանի կիրճում։ Եվ ահա, էլիգոցեն կավաավազային շերտախմբի մեջ հայտնաբերվեց մոտ կես մետր հաստության մի շերտ, որի առանձին մասերում պահպանվել էին քարացած ծառի բազմաթիվ մնացորդներ։ Գիտնականները պրոֆեսոր Գաբրիելյանի գլխավորությամբ եկան այն եզրակացության, որ ծառը երեսուն միլիոն տարեկան է։

Այժմ այդ ծառի ծանր կտորները տեղափոխվել են Երևան և երեսուն միլիոն տարեկան «ծերունին» իր պատվավոր տեղն է գրավել Երևանի պետական համալսարանի հնէաբանության ու պատմական երկրաբանության ամբիոնի դահլիճում։ Ծառի բարձրությունը (մի մասը) 2,5 մետր է, տրամագիծը՝ 1,8, իսկ շրջագիծը՝ 5,6 մետր։ Ծառը վերականգնվել է հզոր բնով ու բազմաթիվ արմատներով։



Հայ երկրաբանների այդ արժեքավոր հայտնագործությունը նոր դուռ է բացում անցյալի շատ գաղտնիքները երևան բերելու ու բնության չգրված էջերը կարդալու համար։

* * *

Դժվար է պատկերացնել երկրագնդի վրա ապրող կենդանական աշխարհի բազմազանությունը։ Այժմ գիտնականները երկրի վրա հաշվում են շուրջ մեկ միլիոն կենդանական տեսակներ։ Դրանցից 13 հազարը կաթնասուններ են, 20 հազարը՝ ձկներ, 28 հազարը՝ թռչուններ, 80 հազարը՝ փափկամորթներ, 20 հազարը՝ խեցգետիններ, 15 հազարը՝ որդեր։

Ռեկորդը պատկանում է միջատներին՝ 750 հազար տեսակ։

Երկրագնդի կենդանի օրգանիզմները ամեն տարի օգտագործում և լրիվ քայքայում են 350 միլիարդ տոննա օրգանական նյութեր։

## ԼԵՆԻՆԳՐԱԴԸ ԵՎ ՎԵՆԵՏԻԿԸ

Լենինգրադը փռված է 101 կղզիների վրա, որոնք միացված են 500 կամուրջներով։ Կամուրջների թվով Լենինգրադը աշխարհում գրավում է առաջին տեղը, իսկ կղզիների թվով զիջում է միայն Վենետիկին։ Յուրաքանչյուր կամուրջը ինժեներական նոր մտահղացում է, ինքնատիպ և ունի իր պատմությունը։

## ՄԵԴՈՒԶԱՆ ԱՆԱԳ Է ԿՈՒՏԱԿՈՒՄ

Նեյլոնե ցանցով ցանկապատված կապույտ ծովախորշում ճոճվում են ջրիմուռների երկար ժապավենները, լողում են մեդուզաների թափանցիկ հովանոցները, սողում են ծովային որդերը՝ գոլոտուրիաները, որոնք նման են փշերով ծածկված վա-



բունգի: Դա կենդանական և բուսական «մետաղագործների» բուծարան-տնկարանն է:

Հետազոտողները հայտնագործեցին օվկիանոսի բնակիչների մի շատ զարմանալի գաղտնիք: Ծովի ջուրը՝ հասարակ ջուր չէ: Նրա մեջ կա և՛ ոսկի, և՛ արծաթ, և՛ յոդ: Բայց այդ նյութերը դժվար է «հավաքել», որովհետև դրանք ցրված են: Իսկ որոշ կենդանիներ և բույսեր, կլանելով ջուրը, այդ նյութերը կուտակում են իրենց մեջ: Լամինարի ջրիմուռները կուտակում են ալյումին, մեդուզաները՝ ցինկ, անագ և կապար, իսկ ծովային վարունգները՝ վանադիում: Ինչու՞, մտածեցին գիտնականները, հետագայում «չաճեցնել» այդ մետաղները մարդու հսկողությամբ:

## ՀՍԿԱ ԾԱՂԻԿԸ

*Ամենախոշոր տերևները ունեն արքայական ջրաշուշանները (Ամազոնի ավազան): Նրանց շրջագծի երկարությունը 6 մետր է, իսկ տրամագիծը՝ 40 սանտիմետր:*



## ԿԱՏԱՂԱԾ ՎԱՐՈՒՆԳՆԵՐ

Կասպից և Սև ծովերի ափերին աճում են կատաղած վարունգներ: Բավական է դիպչել նրա



հասունացած պտուղներին, և այդ բույսը հեղուկ շիթ է կրակում:

* * *

Ամենադիմացկուն կենդանին, որը կարող է երկար ժամանակ դիմանալ առանց ջրի, համարվում է ուղտը: Ծարավության ընթացքում նա կորցնում է իր քաշի երրորդ մասը: Իսկ երբ ուղտի չափ ջուր տան նրան, ուղտը կարող է միանգամից մոտ 130 լիտր ջուր խմել: Եվ երբ հագեցնում է ծարավը, անմիջապես վերականգնվում է նրա և՛ քաշը, և՛ տեսքը:

Սակայն ուղտին հաղթում է լեռնային սկյուռը, որն ապրում է Հարավային Ամերիկայում: Այդ գազանիկը կարող է ապրել առանց ջրի 100 օր: Եվ այնուամենայնիվ առաջնությունը պատկանում է պարկավոր առնետին, նա ընդհանրապես ջուր չի խմում:

* * *

*Ճապոնական Կյուսյու կղզու վրա կա մի լիճ, որի մի կեսը դեղին գույն ունի, այդ մասում ծծմբի կուտակումներ կան, իսկ մյուս կեսը՝ վարդագույն է: Այդ գույնը նրան տալիս է այդտեղ կուտակված երկաթի օքսիդը: Իսկ Ալժիրում կա մի լիճ, որտեղ ջրի փոխարեն թանաք է: Նրա մեջ թափվում են երկու գետակներ: Դրանցից մեկի ջուրը հագեցած է երկաթի աղերով, իսկ մյուսը հոսում է տորֆային ճահիճների միջով և պարունակում է նույն նյութերը, ինչ որ թանաքի գիտորի հյութը: Այդ գետերի ջրերի միացությունից ստացվում է թանաք: Այդ լճում ոչ մի կենդանություն չկա:*

* * *

*Կորսիկայի կրկեսից փախել էր մի առյուծ: Ազատության մեջ գտնվելու առաջին իսկ պահին նա կծեց դաշտում արածող էշի պոչը: Կատաղած էշը, երևի մոռանալով, որ իր դիմաց կանգնած է գազանների արքան, անցավ հակահարձակման: Նրան միացան իր ցեղակիցները՝*



*և առյուծը խայտառակությամբ փախավ: Վարժեցնողը նրան գտավ վախից մի նկուղի անկյունում կուչ եկած:*

* * *

*Որպեսզի դադարեցնեն գորիլաների միջև տեղի ունեցող կռիվները, Նյու-Յորքի գազանանոցի ղեկավարները նրանց վանդակներում հեռուստացույցներ դրեցին: Եվ կապիկները, մոռանալով իրենց կռիվները, մեծ հետաքրքրությամբ սկսեցին հետևել հաղորդումներին:*



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 10 նոյեմբեր 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96։*

ՎՖ 06667։ Պատվեր՝ 1301։ Տպաքանակ՝ 53100։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 28/X. 1968 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։ Գինը՝ 10 կ.




*Դեռ տասնութ տարեկան էր նա, երբ հրատարակեց իր առաջին աշխատությունը։ Իսկ քսան տարեկան հասակում, երբ ավարտեց Լենինգրադի համալսարանը, նա ուներ արդեն տասը գիտական աշխատություն։ Քսաներեք տարեկան հասակում ավարտեց ասպիրանտուրան և դարձավ դոցենտ։ Քսանվեց տարեկան հասակում պրոֆեսորի կոչում ստացավ և սկսեց ղեկավարել իր ստեղծած աստրոֆիզիկայի ամբիոնը։ Երբ քսանյոթ տարեկան էր, առանց դիսերտացիայի պաշտպանության նրան շնորհեցին ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների դոկտորի կոչում։ Իսկ երբ լրացավ երեսունմեկ տարին, նրան ընտրեցին Սովետական Միության գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ։ Պատերազմի տարիներին նա տեղա-*

## ԱՍՏՂԱՅԻՆ

*փոխվում է Հայաստան և դառնում հայկական գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ... Իսկ այժմ Վիկտոր Համբարձումյանը հանդիսանում է արտասահմանյան տասը գիտությունների ակադեմիաների և մի քանի աստղագիտական ընկերությունների պատվավոր անդամ և միջազգային աստղագիտական միության հիմնական ղեկավարներից մեկը, որի նախագահն էր նա չորս տարի։ Իր զեկուցումներով և դասախոսություններով նա բազմիցս հանդես է եկել Լոնդոնի, Էդինբուրգի, Կալիֆոռնիայի համալսարաններում։ Հետաքրքիրն այն է, որ մեծ մասամբ նա ելույթ է ունենում տվյալ երկրի լեզվով։ Նրան են հանձնված անգլիական աստղագիտության արքայական միության ոսկե և Ֆրանսիայի Ժան-Սանի մեդալները։*

*Ինչպես տեսնում եք, փաստերը շատ են ցայտուն, իրենք են խոսում իրենց մասին։*

*Աստրոֆիզիկան, որով զբաղվում է Վիկտոր Համբարձումյանը, երիտասարդ գիտություն է։ Նրա նպատակն է ուսումնասիրել երկնային մարմինների ֆիզիկական հատկությունները։ Առաջին հայացքից գուցե դա շատ ֆանտաստիկ ու անիրական է հնչում։ Սակայն բոլորովին էլ այդպես չէ։ Ամեն ինչ շատ իրական է և դեռ ավելին, աստրոֆիզիկայի ամեն մի նորություն մյուս բնագավառների գիտնականներին հնարավորություն է տալիս ավելի արագորեն բաց անել բնության գաղտնիքները։*

*Ահա հենց դրա համար էլ Հայաստանում ստեղծվեց աստղադիտարանը։ Այդ աստղադիտարանի*

շենքը կառուցված է Արագած լեռան փեշերին՝ Բյուրական գյուղի այգիների մեջ։ Բյուրականի աստղադիտարանում տեղակայված են ամենաժամանակակից սարքավորումները, շատ պրոցեսներ ավտոմատացված են, որոշ ապարատներ իրենց տեսակի մեջ հազվագյուտ են։ Ահա այդտեղ է աշխատում Վիկտոր Համբարձումյանը իր երեսունհինգ աշակերտների հետ, որոնց խումբը անվանում են «հայ աստրոֆիզիկոսների դպրոց»։ Եվ իսկապես, դրանք յուրահատուկ դպրոցականներ են՝ ակադեմիայի թղթակից անդամներ, գիտության դոկտորներ ու թեկնածուներ, որոնց աշխատությունները հայտնի են ամբողջ աշխարհում։

Շատերը զարմանում են, թե ինչպե՞ս է Բյուրականի աստղադիտարանը տասը տարվա ընթացքում արժանացել նույն փառքին ու հռչակին,



## ԳԻՏՆԱԿԱՆԸ

ինչ-որ հարյուր տարվա պատմություն ունեցող աշխարհի խոշորագույն աստղադիտարանները։

Որպես այդ հարցի պատասխան կարող են հանդիսանալ Հոլանդիայի Լեյդենսկոնյան աստղադիտարանի դիրեկտոր Յան Օորտայի խոսքերը՝ Բյուրականում կայացած միջազգային կոնֆերանսում։ Նա ասաց, որ այլևս չի զարմանում, երբ մեկը մյուսի ետևից հաստատվում են Համբարձումյանի վաղուց ի վեր մարգարեաբար առաջ քաշած բոլոր գիտական հիպոթեզները։

Թեև Վիկտոր Համբարձումյանը շատ հիպոթեզներ է առաջ քաշել, սակայն, ես կպատմեմ դրանցից սոսկ մեկի մասին, որն ունի նաև հետաքրքիր պատմություն։

Աստղագետները ընդունում էին, որ բոլոր աստղերն ու մոլորակները մի տարիքի են, ստեղծվել են տասնյակ միլիարդ տարիներ առաջ։ Եվ այնուհետև աստղային աշխարհում նշանակալից փոփոխություն տեղի չի ունեցել։ Այդ նույն կարծիքին էին նաև աշխարհի աստրոֆիզիկայի մեծագույն հիմնադիրներ՝ գերմանացի Յոդանը, անգլիացի Դիրակը, բելգիացի Լամետրը և ուրիշներ։ Բայց հանկարծ... Ո՛չ, հայտարարեց Վիկտոր Համբարձումյանը, աստղերի ձևավորումը մի երկարատև պրոցես է, որը շարունակվում է մինչև օրս։ Եվ դեռ ավելին, նա որոշեց աստղային տարբեր համակարգությունների տարիքը, որոնց թվում գտնվեցին շատ «երիտասարդ» աստղեր։ Այդ նշանակում է, որ նրանք... ընդամենը մի քանի միլիոն տարեկան են։ Հետևապես, հաստատում էր Վիկտոր Համբարձումյանը, աստղեր կարող են առաջանալ նաև այժմ ու հետագայում։

Դա մի մեծ հեղաշրջում էր գիտության բնագավառում։ Համարձակ մարտահրավեր աշխարհի ուժեղագույն գիտնականներին։

Նոր թեորիան դիմավորեցին խիստ վերապահորեն, նույնիսկ կասկածամտորեն, չէին ուզում հրաժարվել հին գաղափարներից։ «Վիկտոր Համբարձումյանի փաստարկները գիտական են, սակայն, դա միայն թեորիա է, մենք դեռ կվիճենք», —ասում էին շատերը։ Եվ վիճում էին։ Վիճում էին այնքան ժամանակ, մինչև որ ամերիկյան գիտնականներին բախտ վիճակվեց դիտել հայ աստղագետի թեորիան հաստատող աստղային վիթխարի մի պայթյուն։ Նման դիտումներ կատարեցին նաև հոլանդացի Բլաուն Լեյդենսկոնյան աստղադիտարանում և Վիկտոր Համբարձումյանի աշակերտ Բենիամին Մարգարյանը Բյուրականի աստղադիտարանում։

Դրանից հետո Վիկտոր Համբարձումյանի աստղերի առաջացման թեորիան աշխարհի բոլոր աստրոֆիզիկոսների կողմից ընդունվեց որպես ամենաճշմարիտը։

Կարելի էր գրել Վիկտոր Համբարձումյանի այլ հիպոթեզների մասին էլ, որոնք հաստատված են, սակայն, ես պիտի ավարտեմ մեր ակադեմիայի պրեզիդենտի մասին գրած այս փոքրիկ ակնարկը։ Ես որոշեցի այս ակնարկը վերնագրել «Աստղային գիտնականը», ոչ միայն այն պատճառով, որ նրա նշանավոր հայտնագործությունները կապված են աստղերի հետ, այլև նրա համար, որ սովորական «աստղ» բառը ընկալվում է որպես չորս կողմ ճառագայթող, բոլորին իր լույսն ու ջերմությունը տվող մի ինչ-որ բան։ Հենց այդպիսին է մեր հոբելյարը։ Եվ իսկապես, նա «աստղային գիտնական է»։

ՅՈՒՐԻ ՄԱՐՅԱՆ





ԴԻՄԱՆԿԱՐ
ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱՐԵԳ
Երևան, 10 տ.



ԼՈՒՍՆԻ ՎՐԱ
ԳՐԻԳՈՐՅԱՆ ԼԵՎՈՆ
Էջմիածնի շրջ., գյուղ Նորակերտ,
4-րդ դաս. աշ.



ՁԿՆԻԿ
ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱՐՄԱՆ
Երևան, 6 տ.



ՄԵՐ ԳՅՈՒՂԸ ԱՌԱՋ
ԽԱՉԱՏՐՅԱՆ ԳԵՎՈՐԳ
Թալինի շրջ., գ. Դավիթաշեն,
8-րդ դաս. աշ.